Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի Արդյունաբերական արտադրության և շինարարության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

ՀԿԿ Կենտկոմի Գյուղատնտեսական արտադրության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՓԵՏՐՎԱՐ 3 1963

**ՄԱՐՏԻ 17-Ը**

**ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ**

**ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ**

**ՕՐՆ Է**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԽԱՂԱՂ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԹՈՒՆ ՊԱՀԱՊԱՆԸ

*Փետրվարի 23-ին սովետական ժողովուրդը, սոցիալիստական երկրների աշխատավորները, աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ տոնելու են Սովետական զինված ուժերի 45-րդ տարեդարձը։ Սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի պատմությունը հերոսության, հայրենիքին անձնվիրաբար ծառայելու և իրենց վրա դրված մարտական խնդիրները պատվով կատարելու հիանալի օրինակ է։ Շրջապատված կոմունիստական պարտիայի և ժողովրդի ջերմ հոգատարությամբ, Սովետական զինված ուժերը տարեցտարի կոփվում ու ամրանում են, աճում է նրանց մարտունակությունը։ Հերոսական սովետական բանակը ստեղծվել է մեծ Լենինի նախաձեռնությամբ, աննկարագրելի ծանր պայմաններում։ Սովետական բանակը իր ստեղծման առաջին իսկ օրվանից կենաց և*





*մահու կռիվ մղեց արտաքին և ներքին հակահեղափոխական գազազած հրոսակախմբերի դեմ։*

*Արևմուտքից մեր երկրի վրա էին շարժվում մինչև ատամները զինված գերմանական և ավստրո-հունգարական բանակները։ Հյուսիսում և հարավում անգլիական, ամերիկյան և ֆրանսիական իմպերիալիստները զինված դեսանտներ էին իջեցրել սովետական հողի վրա։ Օտարերկրյա ինտերվենտների հետ միասին մեր դեմ պայքարի էին դուրս եկել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի կողմից տապալված դասակարգերը՝ կալվածատերերը, կապիտալիստները, կուլակները և բուրժուական նացիոնալիստները։*

*Վ. Ի. Լենինը նշում էր, որ ինտերվենտների սպիտակ գվարդիական միացյալ ուժերի դեմ կարող է պայքարել միայն զինվորական բոլոր հիմունքներով կազմակերպված կանոնավոր հեղափոխական բանակը։ Ռևոլյուցիայի բախտը, սովետական իշխանության բախտը կախված էր նրանից, թե բանվոր դասակարգին ինչ չափով կհաջողվի ամենակարճ ժամանակամիջոցում ստեղծել իր ուժեղ և մարտունակ բանակը։*

*Տակավին երիտասարդ սովետական իշ-*

խանության համար կենսական նշանակություն ունեցող այդ խնդիրը կոմունիստական պարտիան, Լենինի գլխավորությամբ, մեծ հաջողությամբ լուծեց: Դրա շնորհիվ կարմիր բանակը 1918 թվականի փետրվարի 23-ին Նարվայի և Պսկովի տակ առաջին փառապանծ հաղթանակը տարավ գերմանական իմպերիալիզմի բանակների դեմ: Հենց հաղթանակի այդ օրն էլ մինչև այժմ տոնվում է, որպես սովետական բանակի ծննդյան օր:

Իրենց գոյության ընթացքում Սովետական զինված ուժերը բազմիցս համառ և կատաղի մարտերում պաշտպանեցին մեր մեծ Հայրենիքը իմպերիալիստական գիշատիչներից: 1918—1921 թվականներին, քաղաքացիական պատերազմի տարիներին, բազմաթիվ թշնամիների դեմ մղած դաժան ճակատամարտերում, աննկարագրելի ծանր պայմաններում, կարմիր բանակը գլխովին ջախջախեց օտարերկրյա ինտերվենտներին և հակառևոլյուցիոն բանդաներին: Այնուհետև 1938 թվականին սովետական զորքերը Խասան լճի, 1939 թվականին՝ Խալխին գոլի շրջաններում ջախջախեցին ճապոնական զավթիչներին, իսկ 1939—1940 թվականների ձմռանը՝ սպիտակ ֆիններին:

Սակայն Սովետական Միության զինված



ուժերի համար, սովետական ժողովրդի համար, ամենամեծ փորձությունը եղավ 1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմը, երբ հիտլերյան Գերմանիան ուխտադրժորեն հարձակվեց մեր երկրի վրա: Ֆաշիստական Գերմանիայի և նրա դաշնակիցների մոտ 200 ընտիր դիվիզիաներ, ավելի քան 4.000 տանկեր, 50.000 հրանոթներ և ականանետներ, մոտ 5.000 ինքնաթիռներ ներխուժեցին մեր երկիրը: Ծավալվեց կատաղի ճակատամարտ ավելի քան 3.000 կմ. ռազմաճակատում՝ Բալթիկ ծովից մինչև Սև ծովը:

Մեր հայրենիքի վրա ֆաշիստների կատարած հարձակումը չսարսափեցրեց սովետական ժողովրդին: Սովետական Միության բոլոր ժողովուրդները մեկ մարդու պես ոտքի ելան պաշտպանելու իրենց սոցիալիստական հայրենիքի ազատությունն ու անկախությունը:

1941 թվականի ամռանը և աշնանը սովետական զորքերը պաշտպանողական դաժան ճակատամարտեր էին մղում թշնամու գերազանց ուժերի դեմ, որոնք հաշվի չառնելով իրենց մեծ կորուստները, ձգտում էին հասնել մեր երկրի կենսականորեն կարևոր կենտրոններին՝ Լենինգրադին, Մոսկվային, Վոլ-

գոգրադին: Հարկադրական նահանջը զուգակցելով ուժեղագույն հակահարվածների հետ սովետական զորքերին հաջողվեց 1941 թվականի սեպտեմբերի կեսերին կասեցնել թշնամու հարձակումները համարյա բոլոր ուղղություններում և մեծ կորուստներ պատճառել նրա կենդանի ուժին և տեխնիկային:

Ռազմական արվեստի պատմության մեջ անմոռանալի էջ հանդիսացավ գերմանա-ֆաշիստական զորքերի ջախջախումը Մոսկվայի տակ:

Սովետական ռազմական արվեստի գերազանցությունն ու հզոր ուժը դրսևորվեց 1942—1943 թվականների ձմեռային գործողությունների ժամանակ, երբ գլխովին ջախջախվեց գերմանական 330 հազարանոց խմբավորումը Վոլգոգրադի մոտ և մեր զորքերի հարվածների տակ գերմանա-ֆաշիստական բանակը տարբեր ռազմաճակատներում կորցրեց սպանված ու գերի մոտ մեկ միլիոն երկու հարյուր հազար զինվոր ու սպա: Սովետական զորքերը գրավեցին և ոչնչացրին 5.090 ինքնաթիռ, 9.190 տանկ, 20.360 հրանոթ և մեծ քանակությամբ սպառազինություն ու ռազմագույք:

1943 թվականի ամռանը Կուրսկի մոտ ծավալված պատմական ճակատամարտից



հետո, գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը ստիպված էր ընդմիշտ հրաժարվել հարձակողական ստրատեգիայից և անցնել պաշտպանության: Այդ պահից սկսվում է գերմանա-ֆաշիստական բանակի անընդհատ նահանջը սովետական բանակի ուժեղ ճնշման տակ:

1944—1945 թվականներին մեր բանակը թշնամուն խորտակիչ հարվածներ էր հասցնում Աջափնյա Ուկրաինայում, Բելոռուսիայում, Արևելյան Պրուսիայում և Լեհաստանում: Բեռլինյան եզրափակիչ օպերացիայում սովետական զորքերը ուժի տեսակետից չտեսնված հարված հասցրին թշնամուն: Ամենակարճ ժամկետում ոչնչացվեց թշնամու մի խոշոր խմբավորում և գերմանա-ֆաշիստական բանակը վերջնականապես պարտության մատնվեց:

Հայրենական մեծ պատերազմի պատմական հաղթանակի վճռական պայմանը Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական պարտիայի ղեկավարությունն էր, սովետական մարդկանց բարոյա-քաղաքական միասնությունը, մեր բազմազգ հայրենիքի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, սովետական բանակի անպարտելի ուժը:

Երկրորդ համաշխարհային պատերազմում

Սովետական Միության հաղթանակի շնորհիվ ոչ միայն ազատագրվեց մարդկությունը ֆաշիզմի զազրելի լծից, այլև մի շարք երկրներում՝ Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Հունգարիայում, Հարավսլավիայում, Ռումինիայում, Բուլղարիայում, Ալբանիայում, Չինաստանում, Դեմոկրատական Գերմանիայում, Հյուսիսային Կորեայում և Հյուսիսային Վիետնամում աշխատավորները ազատագրվեցին կապիտալիստական լծից։

Երկրորդ համաշխարհային պատերազմում Սովետական Միության հաղթանակը ուժեղ խթան հանդիսացավ Ասիայի և Աֆրիկայի գաղութային երկրների ազգային-ազատագրական պայքարի ծավալման համար և կազմալուծեց իմպերիալիզմի գաղութային սիստեմը, որի հետևանքով զգալի փոփոխության ենթարկվեց երկրագնդի քաղաքական քարտեզը և հատկապես Ասիան, Աֆրիկան ու Արաբական Արևելքը։ Տասնյակ գաղութային և կիսագաղութային երկրներ ձեռք բերեցին պետական անկախություն։

Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտից անցել է մոտ 18 տարի։ Ետպատերազմյան հնգամյակների հաջող իրագործումը մեր երկրի տնտեսական և ռազմական հզորությունը բարձրացրեց մի նոր աստիճանի։



Կոմունիստական պարտիայի XXII պատմական համագումարը կանխագծեց մեր հայրենիքի ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության և արվեստի հետագա վերելքը, մշակեց սովետական ժողովրդի բարեկեցության աճի վիթխարի ծրագիրը։ Կոմունիզմի կառուցման վիթխարի հեռանկարները էլ ավելի են բարձրացնում սովետական մարդկանց քաղաքական ակտիվությունը և նրանց անձնվեր աշխատանքի ոգեշնչում հանուն սովետական պետության հզորացման։

Զբաղված լինելով կոմունիզմի կառուցման խաղաղ և ստեղծագործ աշխատանքով սովետական ժողովուրդը անհողդողդ կանգնած է համընդհանուր խաղաղության պաշտպանության դիրքերում, վճռականորեն պայքարում է ընդհանուր զինաթափման համար, նոր կործանարար պատերազմների ծավալման դեմ, ատոմային զենքի փորձարկումների դեմ և նրա ընդմիշտ արգելման ու պետությունների միջև խաղաղ գոյակցման համար։

«Խաղաղության քաղաքականությունը, որ վարում է Սովետական Միությունը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ 6-րդ գումարման Գերագույն սովետի երկրորդ սեսիայում,—

բխում է մեր ժողովրդական պետության սոցիալիստական բնույթից, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակներից: Մեր բոլոր խոհերն ուղղված են ստեղծարար աշխատանքին, միմիայն ստեղծարար աշխատանքին, կոմունիզմի կառուցմանը»:

Սակայն սովետական պետության քաղաքականությունը դուր չի գալիս իմպերիալիստական երկրների ռեակցիոն շրջաններին, պատերազմի հրձիգներին: Նրանք ոչ մի ջանք չեն խնայում միջազգային լարվածությունն երկարացնելու և նոր համաշխարհային պատերազմ սանձազերծելու համար: Այդ ռազմամոլ գիշատիչները մոռացության են տալիս երկրորդ համաշխարհային պատերազմի դասերը: Իմպերիալիստական երկրների ագրեսիվ շրջանները ստեղծում են միջազգային լարվածության այնպիսի հանգույցներ, որոնք հղի են մարդկության համար վտանգավոր հետևանքներով: Այդ լարվածության կուլմինացիոն կետը եղավ Կարաիբյան ծովի շրջանի ճգնաժամը:

Սովետական ժողովուրդը պատերազմ չի ուզում:

«Սակայն մենք այս մոլորակի վրա մենակ չենք ապրում,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,



— և մենք չենք կարող հաշվի չառնել այն, որ ագրեսիվ իմպերիալիստական ուժերը պաշտպանում են սառը պատերազմը, շարունակ ուժեղացնում են սպառազինությունների մրցավազքը, որ նրանք Սովետական Միությունը շրջապատել են ռազմական բազաների օղակով և պարծենում են Սովետական Միության, սոցիալիստական երկրների վրա հարձակման իրենց ռազմական պլաններով»:

Այնուհետև ընկ. Խրուշչովը նշում է, որ սովետական մարդիկ լավ են աշխատել պաշտպանության ամենաժամանակակից և ամենահզոր միջոցները՝ ատոմային ու ջրածնային ռումբեր և հրթիռային զենք ստեղծելու համար, ներառյալ միջմայրցամաքային բալիստիկ ու գլոբալ հրթիռները: Մենք ստեղծել ենք այդ միջոցները, դրանք լավագույնն են աշխարհում, և մենք ունենք բավարար քանակությամբ այդպիսի միջոցներ, մեր թշնամիների հարվածին կայծակնային խորտակիչ հարվածով պատասխանելու համար, որը մոխրակույտի կվերածեր թե՛ մեր դեմ ուղղված բազաները, որտեղ էլ որ գտնվեն դրանք, թե՝ այն դարբնոցները, որոնք զենք են կռում ագրեսորի զինված ուժերի համար:

Սովետական բանակը մեր երկրի, մեր ժողովրդի, ստեղծարար ժողովրդի, մարտնչող ժողովրդի փառքն ու պարծանքն է, մենք հպարտանում ենք նրա հզորությամբ և մարտական փառքով։ Կոմունիստական պարտիան, սովետական պետությունը և սովետական ժողովուրդը ոչ մի ջանք չեն խնայում իրենց պանծալի բանակի հզորությունն էլ ավելի բարձրացնելու համար։

Ի պատասխան դրան, Սովետական զինված ուժերի ռազմիկները բազմապատկում են իրենց մարտական պատրաստականությունը, անձնվիրաբար աշխատում են տիրապետել ռազմական բարդ տեխնիկային ու զենքին։

Դաստիարակվելով ու ղեկավարվելով կոմունիստական պարտիայի կողմից, Սովետական Միության զինված ուժերը անհողդողդ կանգնած են մեր երկրում կոմունիզմի կառուցման և ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության դիրքերում։

Ս. Ս. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Սովետական Միության Հերոս,
պահեստի գեներալ-լեյտենանտ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան ՍՍՌՄ 15 իրավահավասար միութենական ռեսպուբլիկաներից է, իսկ յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա բանվորների և գյուղացիների Սովետական Սոցիալիստական ազգային պետություն է։

Միութենական ռեսպուբլիկաները ՍՍՌՄ կազմի մեջ միավորվել են լիակատար իրավահավասարության սկզբունքով։ Այդ սկզբունքը արտահայտվում է այն բանով, որ նրանք բոլորն էլ սուվերեն պետություններ են և ունեն միատեսակ իրավունքներ պետական կյանքի բոլոր բնագավառներում։

ՍՍՌՄ-ի մեջ մտած ամեն մի միութենական ռեսպուբլիկա կառուցված է ըստ ազգային հատկանիշի. դրանցից ամեն մեկի բնակչության մեծամասնությունը պատկանում է որևէ մեկ ազգի, որի անունով էլ կոչվում է տվյալ ռեսպուբլիկան։ Ճիշտ նույն ձևով էլ կազմվել է Հայկական ՍՍՌ-ն, որն իրենից ներկայացնում է բանվորների և

գյուղացիների սոցիալիստական պետություն։

ՍՍՌՄ-ը ժողովուրդների միություն է։ Նրանցից յուրաքանչյուրը ազատորեն ստեղծել է իր պետությունը և բոլորը միասին կամավոր կերպով միավորվել են մեկ բազմազգ միութենական հզոր պետության մեջ։ Հետևաբար պահպանված է ՍՍՌՄ-ի մեջ մտնող բոլոր ժողովուրդների ու ազգերի եղբայրությունն ու փոխադարձ համագործակցությունը։ Նրանք ռուս մեծ ժողովրդի աջակցությամբ միացյալ ուժերով ՍՍՌՄ-ը դարձրին աշխարհի հզորագույն տերությունը և ծաղկեցրին ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, ամբողջ աշխարհով մեկ ցուցադրելով սովետական գիտության ու տեխնիկայի փառապանծ նվաճումները։

ՍՍՌՄ կազմի մեջ մտնող միութենական ռեսպուբլիկաներին վերապահված են սուվերեն իրավունքներ և նրանք պետական իշխանությունն իրականացնում են ինքնուրույն կերպով այն բոլոր հարցերի գծով, որոնք ենթակա չեն ՍՍՌՄ իրավահավասարությանը։ Ամեն մի միութենական ռեսպուբլիկայի ինքնուրույնությունը վավերացված է նրա կոնստիտուցիայով։



Ահա թե ինչու Հայկական ՍՍՌ-ն, լինելով ՍՍՌՄ-ի անդամ, միևնույն ժամանակ սուվերեն պետություն է։

Հայկական ՍՍՌ-ն սուվերեն պետություն է, որովհետև նա ունի իր տերիտորիան, որը չի կարող փոփոխության ենթարկվել առանց նրա համաձայնության։ Պետական տերիտորիան ժողովրդի սուվերեն անկախության նյութական արտահայտությունն է։ Տերիտորիան պետության սուվերենության հիմունքներից մեկն է։ Փոփոխել պետության տերիտորիան առանց նրա համաձայնության, նշանակում է ժխտել տվյալ պետության ինքնուրույնությունը։

Հայկական ՍՍՌ-ն ունի իր Կոնստիտուցիան՝ Հիմնական օրենքը, որը ընդունվում և փոփոխվում է Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի կողմից։ Կոնստիտուցիան կազմելիս հաշվի են առնված Հայկական ՍՍՌ առանձնահատկությունները, ազգային սպեցիֆիկ գծերը։ Կոնստիտուցիան միաժամանակ կառուցված է ՍՍՌ Միության Կոնստիտուցիային լիովին համապատասխան։

Հայկական ՍՍՌ-ն ունի իր բարձրագույն օրենսդրական օրգանը, հանձին Գերագույն սովետի, որն ընդունում է ռեսպուբլիկայի իրավասությանը վերաբերող օրենքներ։

Հայկական ՍՍՌ-ն ունի իր պետական կա-ռավարման բարձրագույն օրգանը՝ Մինիս-տրների սովետը, որը ռեսպուբլիկայի բարձրագույն գործադիր և կարգադրիչ օր-գանն է:

Հայկական ՍՍՌ-ն ունի իր գերագույն դա-տարանը, որն ընտրվում է ռեսպուբլիկայի Գերագույն սովետի կողմից՝ 5 տարի ժամա-նակով և որի վրա է դրվում ռեսպուբլիկայի բոլոր դատական օրգանների դատական գոր-ծունեության հսկողությունը:

Հայկական ՍՍՌ բոլոր բարձրագույն և տե-ղական պետական օրգաններում ու հիմ-նարկներում գործավարությունը տարվում է Հայկական ՍՍՌ մայրենի լեզվով՝ հայերե-նով (Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 119-րդ հոդված):

Հայկական ՍՍՌ-ն իրավունք ունի ցան-կացած ժամանակ ազատ կերպով դուրս գալու ՍՍՌՄ կազմից: Նրա այդ իրավունքը չի սահմանափակված ոչ մի ժամկետով և ոչ մի պայմանով:

Հայկական ՍՍՌ սուվերեն պետություն լինելու երաշխիքներից մեկն էլ ռեսպուբլի-կայի քաղաքացիության առկայությունն է:

ՍՍՌՄ Գերագույն սովետի քաղաքացիու-թյան վերաբերյալ ընդունած օրենքն իրա-





վունք է վերապահում միութենական ռես-պուբլիկաների Գերագույն սովետների նա-խագահություններին՝ տալ ռեսպուբլիկայի քաղաքացիության իրավունք, քանի որ ըստ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 21-րդ հոդվածի «Միութենական ռեսպուբլիկայի յուրաքանչ-յուր քաղաքացի հանդիսանում է ՍՍՌՄ քա-ղաքացի»:



Հայկական ՍՍՌ սուվերենությունը ար-տահայտվում է նաև ՍՍՌՄ պետական իշ-խանության բարձրագույն և պետական կա-ռավարման օրգաններին նրա իսկական ի-րավահավասար մասնակցությամբ: Այսպես, ՍՍՌՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի կազմում Հայկական ՍՍՌ քաղա-քացիները ընտրում են 25 դեպուտատ, այ-սինքն այնքան, որքան մյուս ռեսպուբլիկա-ները առանձին-առանձին:

ՍՍՌՄ Գերագույն սովետի Նախագահու-թյան նախագահի տեղակալներից մեկը Հայ-կական ՍՍՌ Գերագույն սովետի Նախա-գահության նախագահն է:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի նախագահը ի պաշտոնե հանդիսանում է Սովետական Միության Մինիստրների սովե-տի անդամ, իսկ Հայկական ՍՍՌ գերագույն





դատարանի նախագահը մտնում է ՍՍՌՄ
գերագույն դատարանի կազմի մեջ:
ՍՍՌՄ Գերագույն սովետի կողմից ըն-
դունված օրենքները հրատարակվում են
նաև հայերեն լեզվով: ՍՍՌՄ Գերագույն սո-
վետի արտահերթ սեսիաներ կարող են գու-
մարվել Գերագույն սովետի նախագահու-
թյան կամ միութենական ռեսպուբլիկաներից
մեկի պահանջով, ուրեմն և Հայկական ՍՍՌ
պահանջով:
ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահու-
թյունը կազմակերպում է համաժողովրդա-
կան հարցում (ռեֆերենդում) իր նախաձեռ-
նությամբ կամ միութենական ռեսպուբլիկա-
ներից մեկի պահանջով, ուրեմն և Հայ-
կական ՍՍՌ պահանջով:
Հայկական ՍՍՌ սուվերենության իրա-
վական երաշխիքն է հանդիսանում նաև այն,
որ Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 18-րդ
հոդվածի համաձայն, նա հանձին իր պե-
տական իշխանության և պետական կառա-
վարման բարձրագույն օրգանների, ունի լայն
իրավասություններ:
Հայկական ՍՍՌ-ն ինքնուրույնաբար սահ-
մանում է իր վարչա-տերիտորիալ կառուց-
վածքը:
Հայկական ՍՍՌ-ն որպես սուվերեն պե-



տություն, ունի իր պետական գերբը, դրո-
շակը, պետական հիմնը և մայրաքաղաքը:
Պետական գերբը, դրոշակը, Հայկական
ՍՍՌ-ի, որպես սուվերեն պետության տար-
բերիչ նշաններն են հայ ժողովրդի ռևոլյու-
ցիոն պայքարի, աշխատանքի և հաղթանակի
խորհրդանիշը:
Հայկական ՍՍՌ քաղաքական հիմքն են
կազմում աշխատավորների դեպուտատների
սովետները, որոնք աճել ու ամրապնդվել են
կալվածատերերի ու կապիտալիստների իշ-
խանությունը տապալելու, հայ ժողովրդին
ցարիզմի և ռուսական իմպերիալիստական
բուրժուազիայի ազգային ճնշումից ազատա-
գրելու, դաշնակցական նացիոնալիստական
կոնտրռևոլյուցիան ջախջախելու և պրոլե-
տարիատի դիկտատուրան նվաճելու շնորհիվ:
Ամբողջ պետական իշխանությունը ռես-
պուբլիկայում իրականացվում է աշխատա-
վորների դեպուտատների գյուղական, ավա-
նային, շրջանային, քաղաքային սովետների
և ռեսպուբլիկայի պետական իշխանության
բարձրագույն օրգանի՝ Հայկական ՍՍՌ Գե-
րագույն սովետի միջոցով: Աշխատավորների
դեպուտատների սովետները կազմում են
միասնական, պարզորոշ կազմակերպված
պետական օրգանների սիստեմ: Իշխանու-

թյան տեղական և բարձրագույն օրգանների միջև չկա հակադրություն, քանի որ սովետական իշխանությունը տեղական սովետների միավորումն է մի ընդհանուր պետական կազմակերպության մեջ, նրանց միավորումը սովետների ռեսպուբլիկայի մեջ։ Սովետների կազմակերպական միասնությունը ապահովվում է նրանց տարբեր օղակների միջև իրավունքների և պարտականությունների որոշակի սահմանազատմամբ։ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետը, ինչպես նշեցինք, ռեսպուբլիկայի պետական իշխանության բարձրագույն և միակ օրենսդրական օրգանն է։ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետը, որպես պետական իշխանության բարձրագույն օրգան, Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 22-րդ հոդվածի համաձայն իրականացնում է Հայկական ՍՍՌ-ին վերապահված ֆունկցիաներ։

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի իրավասությանն են վերաբերում ռեսպուբլիկայի Կոնստիտուցիայի ընդունումը, նրա պահպանման վերահսկողությունը և նրա մեջ փոփոխություններ մտցնելը ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 16-րդ հոդվածի համապատասխան, ռեսպուբլիկայի ժողովրդական



տնտեսական պլանի, պետական բյուջեի և նրա կատարման վերաբերյալ հաշվետվության հաստատումը, Հայկական ՍՍՌ վարչա-տերիտորիալ կառուցվածքի սահմանումը և տնտեսական վարչական շրջանների կազմումը, ինչպես նաև ռեսպուբլիկայի ներկայացուցչության սահմանումը միջազգային հարաբերություններում, և ռեսպուբլիկական զորային կազմավորումներ ստեղծելու կարգի սահմանումը։

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետը կազմում է Հայկական ՍՍՌ պետական իշխանության բարձրագույն օրգաններ։ Նա իր առաջին սեսիայում ընտրում է Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի նախագահություն, կազմված Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի նախագահության նախագահից, նրա երկու տեղակալներից, քարտուղարից և նախագահության 9 անդամներից։ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի նախագահությունը հաշվետու է Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի առաջ իր ամբողջ գործունեության համար։ Նրա որոշ կարգի կարևոր հրամանագրերը, որոնք մասնակիորեն լրացնում կամ փոփոխում են Հայկական ՍՍՌ գործող օրենքների նորմանները կամ որոնք վերաբերում են Հայկական ՍՍՌ առանձին մինիս-

տրների պաշտոնից ազատմանը և նշանակմանը հաստատվում են Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի հերթական սեսիայում:

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետն իր առաջին սեսիայում կազմում է Հայկական ՍՍՌ կառավարություն՝ Հայկական ՍՍՌ մինիստրների սովետ, որը պատասխանատու է և հաշվետու նրա առաջ, ինչպես նաև ընտրում է Հայկական ՍՍՌ գերագույն դատարան:

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետն իրավունք ունի բարձրագույն հսկողություն սահմանել Հայկական ՍՍՌ պետական իշխանության և կառավարման օրգանների, ինչպես նաև պաշտոնատար անձանց գործունեության վրա: Այդ իրականացվում է նախ նրանով, որ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի նախագահությունը և մինիստրների սովետը պատասխանատու ու հաշվետու են նրա առջև և այնուհետև նրանով, որ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատները, ինչպես Հայկական ՍՍՌ կառավարության, այնպես էլ կառավարության առանձին անդամների՝ մինիստրների գործունեության նկատմամբ ունեն հարցապնդման իրավունք, որին նրանք պարտավոր են երեք օրից ոչ ուշ բանավոր կամ գրավոր պատաս-



խան տալ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետում:

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի հիմնական և գլխավոր ֆունկցիան օրենքներ ընդունելն ու հրապարակելն է: Կոնստիտուցիան սահմանում է, որ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետը Հայկական ՍՍՌ միակ օրենսդրական օրգանն է: Այդ նշանակում է, որ Հայկական ՍՍՌ տերիտորիայում միայն նա իրավունք ունի հրատարակել օրենքներ, որոնք պարտադիր են Հայկական ՍՍՌ բոլոր օրգանների, պաշտոնատար անձանց և քաղաքացիների համար· առանց բացառության:

Հայկական ՍՍՌ պետական իշխանության բարձրագույն օրգանը՝ Գերագույն սովետը, ընտրվում է Հայկական ՍՍՌ քաղաքացիների կողմից ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրությունների միջոցով, գաղտնի քվեարկությամբ: Դեպուտատների ընտրությանը իրավունք ունեն մասնակցելու Հայկական ՍՍՌ 18 տարին լրացած բոլոր քաղաքացիները:

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ կարող է ընտրվել Հայկական ՍՍՌ 21 տարին լրացած յուրաքանչյուր քաղաքացի:

Իր ամբողջ պատմության ընթացքում-Սովետական պետությունը հանդես է եկել որպես աշխատավորների շահերի կայուն և հետևողական պաշտպան։ Սովետական պետությունը չունի այլ շահեր, բացի ժողովրդի շահերից, նրա խնդիրն է Հայկական ՍՍՌ աշխատավորների համար երջանիկ և կուլտուրական կյանքի պայմանների ստեղծումը։

Սովետական Հայաստանի աշխատավորները կոմունիստական պարտիայի և Հայկական ՍՍՌ պետական իշխանության ու կառավարման օրգանների ղեկավարությամբ փայլուն հաղթանակների են հասել։ Նրանք այժմ մեծագույն խանդավառությամբ նախապատրաստվում են Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և տեղական սովետների ընտրություններին և մարտի 17-ին մեկ մարդու պես իրենց ձայնը կտան մեր Հայրենիքի լավագույն զավակների օգտին, առաջադրված դեպուտատության թեկնածուների օգտին։

Հ. ՄԽՍՐՈԲՅԱՆ
Դոցենտ



# ԸՆԴՕՐԻՆԱԿԵՆՔ ԱԳԻՏԱՏՈՐ ՍՈՐՈԿԻՆԻՆ

Կարդալով Սերգո Օրջոնիկիձեի անվան բալթիական նավաշինական գործարանի փականագործ ագիտատոր Ս. Սորոկինի «Ագիտատորի պարտքի մասին» հոդվածը, զգում ես, որ նա այդ բանվորական մեծ օջախում կոփված, հարուստ փորձով ու տրադիցիաներով, հոգու անկեղծությամբ բանվորը զրուցում է քեզ հետ։

Այդ հոդվածը մեծ ազդեցություն թողեց մեր ֆաբրիկայի ագիտատորների վրա։ Իմ կարծիքով հոդվածը շատ լավ է գրված, սրտի ամբողջ անկեղծությամբ, ժամանակի ոգուն և պահանջներին համապատասխան։

Երբ ընթերցում ես ագիտատոր Սորոկինի հոդվածը, մի պահ մտքով շրջում ես քո հարազատ ձեռնարկությունը, նայում շրջապատն ու զգում, որ իրավացի է Սորոկինը՝ թերությունները պետք է վերացնենք մենք բոլորս, ով հանձն է առել ագիտատորի մեծ և պատվավոր պարտականությունը։

Արդեն չորրորդ տարին է, ինչ աշխատում եմ արտադրության մեջ և ղեկավարում պարտիական կազմակերպությունը։ Ինչպես ասում են շատ ջրեր են հոսել այդ տարիներին։ Ի՞նչքան փոփոխություններ են կատարվել հենց մեզ մոտ՝ ֆաբրիկայում, որտեղ շատ են աճել մարդիկ, աճել է և ֆաբրիկան։ Պրակտիկ աշխատանքը ցույց է տալիս, որ ագիտատորների ճիշտ ընտրությունը շատ է նպաստում գործի հաջողությանը։

Ագիտատոր Սորոկինը ճիշտ է ասում, որ ամենակարևորը դա ագիտատորների ընտրությունն է։ Մի՞թե կարելի է ամեն մարդու վստահել այդ պատվավոր և պատասխանատու գործը, ոչ, չի կարելի։ Ագիտատորը հանդես է գալիս մեր հարազատ կոմունիստական պարտիայի անունից, որպես նրա որոշումների ամենաառաջին մասսայականացնողը։ Նա պետք է լավ իմանա տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի առջև կանգնած խնդիրները, ճանաչի մարդկանց, ունենա նրանց հոգեբանության մեջ թափանցելու ունակություն և ինքը լինի բոլորից օրինակելի։ Այսպիսին է, օրինակ, մեր ֆաբրիկայի գործվածքային ցեխի ագիտատոր Մ. Օհանյանը։ Նա ոչ միայն բովանդակալից ու նպատակասլաց զրույցներ է ունե-



նում ունկնդիրների հետ, այլև նրանց սրտակից ընկերն է, խորհրդատուն՝ աշխատանքում և կենցաղում։ Այսպես, օրինակ, ցեխի բանվորուհի Մ. Պապյանը որոշ ժամանակ բնակարանային վատ պայմաններում էր ապրում, իմանալով այդ մասին ագիտատոր Օհանյանը լինում է ֆաբրիկայի ղեկավարների մոտ և հարց բարձրացնում նրան բնակարանով առաջին հերթին ապահովելու մասին։ Այժմ Պապյանը շատ գոհ է. նա ստացել է 2 սենյականոց բնակարան։

Ագիտատոր Սորոկինը պահանջում է, որ պարտիական, տնտեսական առանձին ղեկավարներ չխուսափեն ժողովրդի հետ հանդիպումներ ունենալուց և համառորեն դաստիարակչական աշխատանք տանեն բնակչության մեջ։ Դա միանգամայն արդարացի պահանջ է։

Այդ նկատի ունենալով մեր ֆաբրիկայի ղեկավարները, առաջին հերթին դիրեկտոր ընկ. Ջ. Տոնոյանը, որը միաժամանակ ագիտկոլեկտիվի ղեկավարն է, սերտորեն կապված է աշխատավորների հետ, հաճախակի նրանց համար զրույց է ունենում՝ ֆաբրիկայի առջև դրված խնդիրների, սոցիալիստական մրցության արդյունքների և շատ ուրիշ կարևոր հարցերի վերաբերյալ։

Ֆաբրիկայի բանվորների հետ սիստեմատիկ հանդիպումներ են ունենում նաև պարտիայի շրջկոմի քարտուղարները: Օրերս Շահումյանի շրջկոմի քարտուղարներ Ա. Արիստակեսյանը, Ս. Գևորգյանը հանդես եկան կոլեկտիվի ժողովներում, զրույց ունեցան բանվորների հետ: Դրանից որոշ ժամանակ անց, շրջկոմի առաջին քարտուղարը երեկոյան այցելեց ֆաբրիկա, ստուգեց գիշերային հերթափոխության աշխատանքները և զրուցեց շատ բանվորների հետ:

Ագիտատոր Սորոկինը իր հոդվածում օրինակ է բերում բանվորների կենցաղային պայմանների բարելավման մասին: Նա շատ ճիշտ է մտածում, որ ովքեր թերագնահատում են այդ կարևոր հարցը, նրանք իսկական ղեկավար կոչվելու իրավունք չունեն: Կոմունիստական պարտիան մեծ ուշադրություն է դարձնում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման վրա, որպեսզի ամեն ինչ արվի մարդու համար, նրա բարօրության ու երջանկության համար:

Վերջին տարիներս մեր ֆաբրիկայում որոշակի աշխատանք է կատարվել բանվորների կենցաղային պայմանները բարելավելու ուղղությամբ: Օրինակ, կառուցվել է բաղնիք



և ակումբ: Ակումբում կան գրադարան, ֆիզկուլտ խաղերի հատուկ անկյուն: Այժմ բոլոր ցեխերն ունեն հանդերձարաններ, կառուցված է բուժկայան, ֆիզկուլտ հրապարակ, սպորտի ձմեռային դահլիճ և այլն: Ֆաբրիկայում հաջողությամբ գործում են գեղարվեստական ինքնագործ խմբերը: Ցեխերում բանվորները աճեցնում են ծաղիկներ:

Մեր ֆաբրիկայի ամբողջ կոլեկտիվը պայքարում է կոմունիստական ֆաբրիկայի պատվավոր կոչման համար: Ունենք տասնյակ բրիգադաներ և մեկ տեղամաս, որ արժանացել են այդ կոչմանը:

Սրտացավություն դեպի մարդը, դեպի աշխատանքը, շատ կարևոր է մեզ բոլորիս համար: Այն կնպաստի բարձր ցուցանիշներով կատարել յոթնամյակի 5-րդ տարվա առաջադրանքները:

Հմուտ ագիտատոր Սորոկինի ելույթը մեր ագիտատորների կողմից ընդունվեց ջերմությամբ, որոնք խոստացան աշխատել և պայքարել նրա օրինակով:

Ս. ՀԱԿՈԲՅԱՆ

Երևանի Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկայի
պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար

# ՀՄՏՈՐԵՆ ՕԳՏՎԵԼ ԱՆՑՅԱԼ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

*Մարտի 17-ին տեղի կունենան Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական սովետների ընտրությունները: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ամենուրեք գործնական աշխատանք են ծավալել ընտրական կամպանիան լավ անցկացնելու համար: Այս օրերին նրանց հանձնարարությամբ մեր ագիտատորները աշխատավորների շրջանում մասսայական-բացատրական աշխատանք են կատարում, որոնք անցյալ ընտրություններից կուտակել են քաղաքական-մասսայական աշխատանքի հարուստ փորձ:*

*Այժմ խնդիրն այն է, որ ագիտատորները այդ փորձից հմտորեն օգտվեն և ագիտացիոն աշխատանքում խելացիորեն կիրառեն աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի այն ձևերն ու մեթոդները, որոնք իրենց լրիվ արդարացրել են նախորդ ընտրական կամպանիաների ընթացքում: Դրա հետ մեկտեղ*



*պետք է հաշվի առնել, որ ագիտացիոն աշխատանքի ամեն մի փորձ արժեքավոր է այն ժամանակ, երբ այն կիրառվում է ոչ թե մեխանիկորեն, այլ տեղական պայմաններն ու հնարավորությունները հաշվի առնելով: Օրինակ, անցյալ տարի Արթիկի շրջանի մի շարք նախընտրական ժողովներում, որոնց նախապատրաստմանն ու անցկացմանը մեծ մասնակցություն էին ունեցել նաև ագիտատորները, հանդես եկող մարդիկ, նշելով ՍՍՌՄ Գերագույն սովետի նախորդ ընտրություններից հետո շրջանի ձեռք բերած նվաճումները, միաժամանակ առաջ քաշեցին պետական հիմնարկների, կոլտնտեսությունների վարչությունների աշխատանքը ավելի հստակ ու ճկուն դարձնելու հարցերը: Նրանք դեպուտատության թեկնածուներից պահանջում էին ազնվորեն ծառայել ժողովրդին, արդարացնել մասսաների վստահությունը:*

*Դեպուտատության թեկնածուների հետ ընտրողների հանդիպումներ ու ժողովներ կազմակերպելը քաղաքական կարևոր միջոցառում են: Յուրաքանչյուր այդպիսի ժողովում և հանդիպման ժամանակ անհրաժեշտ է ոչ միայն մասսայականացնել դեպուտատության թեկնածուների կենսագրությունը,*

խոսել նրանց կատարած լավ գործերի մասին, այլև հանգամանորեն պատմել տվյալ արդյունաբերական ձեռնարկության ու կառույցի, կոլտնտեսության ու սովխոզի առջև դրված խնդիրների մասին։ Անհրաժեշտ է սիստեմատիկաբար ընտրողներին տեղյակ պահել, թե ով, ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը, գյուղատնտեսության բնագավառի աշխատողները ինչպես են նախապատրաստվում գարնանացանին և այլն։

Երևան քաղաքի պարտիական կազմակերպությունները անցյալ տարի ագիտացիոն աշխատանքում ընդգրկել էին պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար շատ աշխատողների։ Ընտրական կամպանիայի օրերին մեծ աշխատանք էր կատարում մայրաքաղաքի ինտելիգենցիան, լավ էին աշխատում դասախոսական խմբերը, կուլտուր-լուսավորական հիմնարկները։ Այդ մեծապես նպաստեց ընտրողների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքի ավելի ծավալմանը։

Երևանի Օրջոնիկիձեի շրջանի ընտրական տեղամասի ագիտկետը, որը գտնվում էր Սարի թաղի կուլտուրայի տանը, ՍՍՌՄ Գերագույն սովետի ընտրությունների նախա-



պատրաստման օրերին թաղամասի բնակչության համար կազմակերպում էր հետաքրքիր ու բովանդակալից միջոցառումներ։ Ագիտկետը լավ կահավորված էր։ Այստեղ ընտրողները ցանկացած ժամանակ ընթերցում էին ՍՄԿՊ XXII համագումարի պատմական փաստաթղթերը, քաղաքական ու գեղարվեստական գրքեր, թարմ թերթեր ու ամսագրեր։ Ագիտկետը երեկոյան ժամերին հատկապես բազմամարդ էր լինում։ Թաղի բնակչության համար հաճախ անցկացվում էր քաղաքական թեմաներով զեկուցումներ ու դասախոսություններ։ Հերթապահ ագիտատորները ընտրողների համար կազմակերպում էին զրույցներ, պատասխանում նրանց բազմաթիվ հարցերին։ Ագիտկետը առանձնացրել էր ագիտատորների հատուկ խումբ, որը քաղաքական-մասսայական աշխատանք էր ծավալում թաղամասի ընտրողների շրջանում։

Աշխույժ ու հետաքրքիր անցավ կայացած հարց ու պատասխանի երեկոն Երևանի Սպանդարյանի շրջանի անհատական պատվերների կարի առաջին ֆաբրիկայում։ Սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոն ցեխային ագիտատորների միջոցով նախապես հավաքել էր ֆաբրի-

կայի կոլեկտիվին հետաքրքրող հարցերը, այնուհետև խմբավորել այն։ Երեկոյին, հարցերին պատասխանելու համար հրավիրվել էին շրջանի պարտիական ու սովետական ղեկավար աշխատողները, դասախոսները և արվեստի ու գրականության մասնագետները։ Ընտրողներին հետաքրքրող բոլոր հարցերին այդ երեկոյում սպառիչ պատասխան տրվեց։ Երեկոյի վերջում նրա մասնակիցների առջև հանդես եկան մայրաքաղաքի թատրոնների մի խումբ դերասաններ։ Կիրովական քաղաքի ընտրողների առջև հանդես էին գալիս պարտիայի քաղաքային կոմիտեի և աշխատավորների դեպուտատների քաղաքային սովետի գործկոմի պատասխանատու աշխատողները, քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարները։

Խնդիրն այժմ այն է, որպեսզի անցյալ ընտրությունների ընթացքում ձեռք բերած փորձը, քաղաքական-մասսայական աշխատանքի լավագույն և արդյունավետ ձևերն ու մեթոդները կիրառենք նաև այս օրերին՝ Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական սովետների ընտրությունների ժամանակ։

Աշխատավորության շրջանում կատարվող քաղաքական ագիտացիան լուրջ և պատասխանատու գործ է՝ մեծ արվեստ։ Եվ նա, ում



վրա դրված է այդ պարտականությունը, պետք է զգա, որ պարտիան բարձր վստահություն է արժանացրել նրան։

Հանձինս ագիտատորների, աշխատավորները տեսնում են պարտիայի պատվիրակներին, որոնք ժամանակին պատասխան են տալիս իրենց հետաքրքրող ու հուզող բոլոր հարցերին։ Հայտնի է, որ ագիտատորների լավ աշխատանքը զգալի չափով կախված է այն բանից, թե պարտիական կազմակերպությունները ինչպիսի հետևողական օգնություն ցույց կտան նրանց, ինչպես կհրահանգավորեն։

Ագիտատորը չպետք է բավարարվի միայն հրահանգչական խորհրդակցություններում կամ սեմինարներում ստացած գիտելիքներով, դրա հետ մեկտեղ նա պետք է խնամքով պատրաստվի յուրաքանչյուր հերթական զրույցին։ Որքան էլ, որ ագիտատորը պատրաստված լինի, այդ նրան չի ազատում յուրաքանչյուր թեմայի վրա լրջորեն աշխատելու, հարցերի վրա լավ մտածելու, կոնկրետ նյութ ընտրելու հոգսից։

Ագիտատորի կողմից նախապես պատրաստված, բազմակողմանիորեն մտածված և պարզ ու մատչելի լեզվով շարադրված զրույցը անպայմանորեն առաջ կբերի մրա-

քերի աշխույժ փոխանակություն: Ագիտացիոն աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ զրույցի ընթացքում որքան շատ լինեն մտքերի փոխանակություններ, այնքան ավելի մեծ կլինի նրա արդյունքը: Այն ամենը, ինչի մասին կասի ագիտատորը, ունկնդիրներն ավելի լավ կըմբռնեն և կդարձնեն իրենց սեփականությունը: Ուստի անհրաժեշտ է, որ ագիտատորը որոնի և գտնի նյութի մատուցման այնպիսի ձևեր ու մեթոդներ, որոնք առավելագույն չափով հետաքրքիր դարձնեն զրույցը:

Ագիտատորը պետք է զրույցի ժամանակ ամեն կերպ ձգտի և հասնի այն բանին, որ զրույցը անցկացնի մտքերի փոխանակության ազատ մթնոլորտում, որ ունկնդիրների նկատմամբ պաշտոնական մոտեցում չլինի, այլ լինի ընկերական, մտերմական փոխհարաբերություն:

Ագիտատորը պետք է համարձակորեն պատասխանի ունկնդիրների հարցերին, թեկուզ ստիպված լինի շեղվելու իր ելույթի կամ զրույցի պլանից: Հայրենական պատերազմի ժամանակ ելույթ ունենալով ագիտատորների առջև Մ. Ի. Կալինինը խորհուրդ էր տալիս նրանց. «Խոսեցեք արտադրության կամ պատերազմի մասին, իսկ եթե պատահի ուրիշ



հարց, որին ժողովուրդը կարձագանքի, ոչինչ, դրա կողքով չպետք է անցնել: Երբ մարդկանց շարժել եք, նրանք արձագանքել են, այնուհետև նրանք կշարունակեն լսել, և նկատի առած հարցերը կկարողանաք քննարկել»:

Եթե ագիտատորի համար դժվար է միանգամից պատասխանել իրեն տրված հարցին, թող նա պատասխանը հետաձգի հաջորդ անգամվան, բայց չմտածված պատասխաններ շտա, իր անիրազեկությունը չքողարկի մշուշապատ ընդհանուր ֆրազներով: «Իսկ որ ամենագլխավորն է,— ասում է Մ. Ի. Կալինինը,— երբեք մի խուսափեք սուր հարցեր դնելուց... պատասխանից մի խուսափեք, դրված հարցերը մի կոծկեք: Եթե չեք կարողանում իսկույն ևեթ պատասխանել այս կամ այն հարցին, հենց ուղղակի էլ ասեք, հարցը հետաքրքրական է ու կարևոր, բայց հիմա դրան պատրաստված չեմ, այդ հարցը իմ կողմից մտածված չի, դժվարանում եմ, թե ինչպես դրան պատասխանեմ: Ես կպարզեմ այն, կխորհրդակցեմ ընկերների հետ և այն ժամանակ կպատասխանեմ ձեզ: Բայց գո՞ւցե ձեր մեջ գտնվի որևէ մեկը, որ կարող է այդ հարցը բացատրել»: Բոցաշունչ ագիտատոր Միխայիլ Իվանովիչ Կալինինի այս խոսքերը

միշտ պետք է հիշեն մեր ագիտատորները և ղեկավարվեն նրա խորհուրդներով:

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի նախորդ ընտրություններից մինչև ներկա ընտրությունները անցել է չորս տարի: Այդ կարճ ժամանակամիջոցում զգալի փոփոխություններ են տեղի ունեցել մեր ռեսպուբլիկայում: Այդ տարիներին սովետական ստեղծագործ մարդու ձեռքերով կյանքի են կոչվել տասնյակ արդյունաբերական նոր ձեռնարկություններ, բերրի են դարձվել տասնյակ հազար հեկտար հողեր, միլիոնավոր մարդիկ ստացել են նոր և հարմարավետ բնակարաններ, զգալիորեն բարելավվել է բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը:

Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական սովետների առաջիկա ընտրությունները անց են կացվում Սովետական Միության բազմազգ ժողովուրդների եղբայրական բարեկամության, կոմունիզմի կառուցման նոր վիթխարի հաջողությունների պայմաններում:

Հմտորեն օգտվենք անցյալ ընտրությունների ժամանակ կուտակված ագիտացիոն աշխատանքի փորձից:

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ԲԱԶՄԱԹԻՎ ԵՎ ԲԱԶՄԱՊԻՍԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Յոթնամյակի ամեն մի նոր տարի, ինչպես եղբայրական մյուս ռեսպուբլիկաներին, այնպես էլ Սովետական Հայաստանին բազմաթիվ ու բազմապիսի հաջողություններ է բերում: Ահա համառոտ տեղեկություններ այդ մասին:

Յոթնամյակի անցած չորս տարում մեր ռեսպուբլիկայում գործարկվել են 69 նոր ձեռնարկություն և 49 խոշոր ցեխ: Յուրացված է արդյունաբերական արտադրանքի ավելի քան 400 տեսակ:

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները 1962 թվականի պլանը ժամկետից 7 օր շուտ կատարեցին:

Միայն անցած 4 տարվա արդյունաբերական արտադրանքի աճը 1958 թվականի մակարդակը գերազանցեց 1,5 անգամ:

Անցած տարի ռեսպուբլիկայի ժողտնտխորհի

-Այս տարի մեր ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի սպառումը կավելանա 9,7%-ով



արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը գերակատարված է 3,1 տոկոսով։

Նույն ժամանակամիջոցում արտադրանքի ինքնարժեքի իջեցումից տրվող խնայողությունը կազմում է 7,7 միլիոն ռուբլի, իսկ արտապլանային կուտակումները՝ ավելի քան 5 միլիոն ռուբլի։

Անցած տարի շարք մտավ մեծ քիմիայի խոշորագույն ձեռնարկություններից մեկը՝ Կիրովականի ացետատային մետաքսի հսկա գործարանը։ Գործարկվեց նաև Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի ացետիլցելյուլոզի կոմպլեքսը և շատ ուրիշ ձեռնարկություններ։

Անցած տարի պլանով նախատեսված 324,5 հազարի դիմաց պետական միջոցների հաշվին կառուցվել և շահագործման է հանձնվել 338,5 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Ռեսպուբլիկայում բնակարանային շինարարության 1962 թվականի պլանը կատարված է 104,3 տոկոսով։ 1961 թվականի համեմատությամբ, 1962 թվականին 80 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն ավելի է կառուցվել։

Կապիտալ շինարարության նախատեսված ընդհա-

Մեր ռեսպուբլիկայում բարձր տեմպերով կզարգանա մեքենաշինությունը, որի արտադրության ծավալը կաճի 15 9 տոկոսով



նոր ծավալը յոթնամյակի անցած չորս տարում գերակատարվել է 29 միլիոն ռուբլով։

Անցած տարի մեր ռեսպուբլիկան երկրին տվեց ավելի քան 2 միլիոն նորագույն էլեկտրաչափիչ սարքեր և ավտոմատացման միջոցներ, 8.500 ժամանակակից մետաղահատ հաստոց, մոտ 600 հազար էլեկտրաշարժիչ և այլն։

Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պատվով դուրս եկան Կիև—Բաքու—Թբիլիսի—Երևան սոցիալիստական մրցությունից։ Նրանք համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարեցին 103,4 տոկոսով, 2,5 տոկոսով կատարել են աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։

Անցյալ տարի Երևանը արդյունաբերական արտադրանք էր տալիս արտասահմանյան 40 երկրների։

Խոշոր հաջողությունների հասան Երևանի շինարարները, որոնք ոչ միայն գերակատարեցին 1962 թվականի բնակարանային շինարարության պլանը, այլև պլանից դուրս շահագործման հանձնեցին 10 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Երևանի բնակչությունից 1962 թվականին մոտ 5.000 ընտանիք ստացան հարմարավետ բնակարան-

— Քիմիական արդյունաբերության արտադրանքի թողարկումը մեր ռեսպուբլիկայում այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, կաճի 38,8 տոկոսով



ներ։ Այս տարի երևանցիները ավելի շատ բնակարաններ կստանան։

Անցած տարի Լենինականում շահագործման է հանձնվել 25 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բնակչությունն ստացավ հիանալի նվեր՝ քաղաքում երթևեկել սկսեցին տրոլեյբուսները։ Շինարարության բնագավառում խոշոր հաջողությունների



— Այս տարի պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին շահագործման կհանձնվի 371 հազար ք. մ. բնակելի տարածություն, որը 1962 թ. համեմատությամբ ավել է 14%-ով։



են հասել նաև ռեսպուբլիկայի մյուս քաղաքները, բանվորական ավաններն ու գյուղերը։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության բնագավառում։ Ռեսպուբլիկայում անցած տարի 20 հազար հեկտարով ընդարձակվեցին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները։

Ռեսպուբլիկայում անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ մոտ երկու անգամ ավելի հացահատիկ է արտադրվել։

Նախատեսված 126 հազար տոննայի փոխարեն ռեսպուբլիկայում արտադրվել է 191 հազար տոննա խաղող։

Խաղողագործներից հետ չեն մնացել ծխախոտագործները։ Նրանք անցյալ տարի երկրին տվեցին 12 հազար տոննա ծխախոտի հումք։

Կատարված է նաև շաքարի ճակնդեղի հանձնման պլանը։ Շաքարի ճակնդեղի մեկ հեկտարի միջին բերքը կազմել է 289 ցենտներ, յոթնամյա պլանով նախատեսված 254 ցենտների դիմաց։ Անցյալ տարի, 1961 թվականի համեմատությամբ, 16 հազար տոննա շաքարի ճակնդեղ ավելի է վաճառվել։

Իրենց պարտավորությունները վատ չեն կատա-



-Այս տարի մեր ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերությունը կթողարկի 73 միլիոն մետր բամբակե, 4,4 միլիոն մետր բրդե, 7,13 միլիոն մետր մետաքսե գործվածքներ։



թել անասնապահները։ Ռեսպուբլիկայում 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, 20 հազար տոննա կաթ, 31 հազար տոննա խաղող, 4,5 միլիոն ձու ավելի է վաճառվել։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում միայն 1959—1962 թվականներին ոռոգելի հողերի տարածությունը ընդարձակվել է 32 հազար հեկտարով։

Գնալով անընդհատ ամրապնդվում է ռեսպուբլիկայի գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան։ Յոթնամյակի անցած չորս տարում ստացվել է ավելի քան 3 հազար տրակտոր, 900 կոմբայն և գյուղատնտեսական շատ ուրիշ մեքենաներ։

Անցած տարի, 1958 թվականի համեմատությամբ, կոլտնտեսություններն ու սովխոզները պետությանը ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ հանձնեցին. շաքարի ճակնդեղի հանձնումը ավելացավ 17, ծխախոտինը՝ 26, բանջարեղենինը՝ 45, մսինը՝ 16, պտուղներինը՝ 50, կաթինը՝ 62 տոկոսով։

Մեծ են մեր ռեսպուբլիկայի հաջողությունները գիտության, կուլտուրայի, կրթության և ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում:




Խմբագիր Վ. [illegible]ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## СОДЕРЖАНИЕ



**Адрес редакции:** Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству промышленностью и строительством

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству сельскохозяйственного производства

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 3

1963

ՎՖ 09880 Պատվեր 121 Տիրաժ 8305.

Հանձնված է արտադրության 1/II 1963 թ.
Ստորագրված է տպագրության 6/II 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.